Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ




№ 20 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1949

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։

---

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՆԱՍՆԱՊԱՀՆԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԾՐԱԳԻՐԸ

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի օրերս հրապարակված՝ «Հայկական ՍՍՌ կոլխոզներում և սովխոզներում անասունների ձմեռումն ապահովման միջոցառումների մասին» որոշումը պարտիական և սովետական բոլոր կազմակերպությունների, կոլխոզային գյուղացիության և սովխոզների բանվորների համար աշխատանքի կոնկրետ ծրագիր է հանդիսանում անասունների ձմեռումն օրինակելի անցկացնելու և հանրային անասնաբուծության հետագա վերելքի համար մղվող պայքարում։

Կենսագործելով հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանի վերաբերյալ ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պատմական որոշումը, ռեսպուբլիկայի կոլխոզները որոշակի աշխատանք են կատարել հանրային

անասունների գլխաքանակի ավելացման և
անասունների ձմեռումը նախապատրաստե-
լու գործում։
1949 թվի հոկտեմբերի 1-ի տվյալների
համաձայն ռեսպուբլիկայի կոլխոզներում ա-
նասունների գլխաքանակը, տարվա սկզբի
համեմատությամբ, ավելացել է հետևյալ
չափով. խոշոր եղջերավոր անասուններինը՝
3,2 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 6,5 տո-
կոսով, ոչխարներին ու այծերինը՝ 3,2 տոկո-
սով, խոզերինը՝ 12,8 տոկոսով, ձիերինը՝
8,5 տոկոսով և թռչուններինը՝ 19 տոկոսով։
Սակայն, չնայած անասունների քանակի
աճմանը, ռեսպուբլիկայի կոլխոզներն ամ-
բողջությամբ վերցրած կատարել են միայն
ձիերի ու խոզերի գլխաքանակի ավելացման
պլանը, իսկ խոշոր եղջերավոր անասունների
գլխաքանակի ավելացման պլանը կատարել
են միայն 97 տոկոսով, ոչխարների ու այծե-
րի գլխաքանակի ավելացման պլանը՝ 91,8
տոկոսով, թռչուններինը՝ 53,9 տոկոսով։
Անասունների գլխաքանակի ավելացման
պլանի թերակատարման հիմնական պատ-
ճառներից մեկն այն է, որ անասունների
անկումը և ստերջությունը մեծ տոկոս է կազ-



մում։ Այդ հանգամանքը բացասաբար է ազ-
դում անասնաբուծության զարգացման վրա,
նվազեցնում է անասունների գլխաքանակի
վերարտադրությունը։ Դրանով էլ հենց բա-
ցատրվում է այն հանգամանքը, որ ընթա-
ցիկ տարում անասունների հանրային գլխա-
քանակի աճը տեղի է ունեցել ոչ թե իր իսկ
հանրային հոտի վերարտադրության հաշվին,
այլ հիմնականում՝ կոլխոզնիկներից, բան-
վորներից ու ծառայողներից կատարված
գնումների հաշվին։ Դա, ինչպես նշված է
Մինիստրների Սովետի և Կենտկոմի որոշ-
ման մեջ, լուրջ թերություն է։
Կոլխոզների վարչությունները պետք է
ձեռք առնեն բոլոր անհրաժեշտ միջոցները
ապահովելու հանրային մթերատու անա-
սունների և թռչունների գլխաքանակի ավե-
լացման պետական պլանի անպայման կա-
տարումը, լրովին վերացնեն անկումից ա-
ռաջացող կորուստները, անասունների հար-
կադրական մորթումը, ապահովեն գյուղա-
տնտեսական կենդանիների զուգավորման
պլանի կատարումը։
Վրա է հասնում անասնաբուծության հա-
մար ամենապատասխանատու շրջանը՝ ձմե-
ռը։ Անասունների ձմեռումը ժամանակին,
օրինակելիորեն նախապատրաստելուց և

անցկացնելուց է կախված անասունների գլխաքանակի հետագա աճը և մթերատվության բարձրացումը։

Անասունների ձմեռումը հաջող անցկացնելու վճռական պայմանն այն է, որ ռեսպուբլիկայի յուրաքանչյուր կոլխոզ և սովխոզ կերի անհրաժեշտ պաշարներ ստեղծի անասունների համար։ Դրա համար անհրաժեշտ է ձեռք առնել բոլոր միջոցները՝ որքան կարելի է շատ կեր հավաքելու համար՝ հավաքել բոլոր այն դաշտերից, սարալանջերից, որտեղ դեռ խոտ կա։ Յուրաքանչյուր կոլխոզ պետք է ամեն մի միջոց գործադրի խոտհնձի և սիլոսի պլանները անպայման կատարելու համար։

Կերի լրացուցիչ աղբյուրներ ստեղծելու նպատակով, Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի որոշումը պարտավորեցնում է կազմակերպել կարտոֆիլի թփերի, եգիպտացորենի ցողունների, ծառերի տերևների կուտակումը, շաքարի ճակնդեղի թփերի և բոստանա-բանջարանոցային կուլտուրաների մնացորդների սիլոսացումը։ Հանրային մթերատու անասունների կերի ռեսուրսներն ավելացնելու համար, վերջապես, անհրաժեշտ է առանձ-



նացնել կարտոֆիլի 1949 թվի բերքի 15—20 տոկոսը։

Անհրաժեշտ քանակությամբ կեր կուտակելու հետ միասին, անհրաժեշտ է կարգավորել բոլոր տեսակի կերերը լրիվ հաշվի առնելու և մուտք անելու գործը։ Պետք է սիստեմատիկ վերահսկողություն սահմանել կերի պահպանման նկատմամբ, կերը խնայողաբար ծախսելու նկատմամբ։ Կերի բաց թողնումը, որպես կանոն, պետք է կատարել կշռով ու անդորրագրերով, առաջնորդվելով կերի ծախսման հաստատված պլաններով։

Ձմեռային արոտավայրերը անասուն տանող կոլխոզները պետք է ուժեղացնեն ձմեռային արոտավայրերում կոշտ կերերի անհրաժեշտ պաշարներ ստեղծելու աշխատանքը, այն հաշվով, որ յուրաքանչյուր ոչխարի համար պատրաստվի միջին հաշվով ոչ պակաս քան մեկ ցենտներ խոտ։

Այս տարի մեծ հնարավորություններ կան ձմեռային արոտավայրերում խոտի անհրաժեշտ պաշարներ ստեղծելու համար։ Կարևորն այն է, որ ժամանակին և լրիվ չափով օգտագործվեն այդ հնարավորությունները։

Անասունների ձմեռումը նորմալ կերպով անցկացնելու մյուս կարևոր պայմանը՝ անասունների տաք, մաքուր և լուսավոր գոմե-

րով ապահովելն է։ Սակայն շատ շրջաններում, ինչպես նշված է Մինիստրների Սովետի և Կենտկոմի որոշման մեջ, միանգամայն անբավարար է կատարվում անասնապահական շենքերի կառուցումը և գոյություն ունեցող շենքերի վերանորոգումը։ 1949 թվի պլանով նախատեսված 1362 շենքի փոխարեն կառուցվել և շահագործման է հանձնվել միայն 572 շենք և կառուցման պրոցեսում է գտնվում 504 շենք։

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը պարտավորեցնում են անասնապահական օբեկտների կառուցումն ավարտել ոչ ուշ, քան մինչև նոյեմբերի 15-ը։ Այդ առաջադրանքը կատարելու համար պետք է զգալի չափով ուժեղացնել շինարարության տեմպը, հատկապես Ալավերդու, Ախտայի, Ամասիայի, Գորիսի, Ղափանի և մի շարք այլ շրջանների կոլխոզներում։

Շրջսովետների գործկոմներին կից վերջերս կազմակերպված գյուղական ու կոլխոզային շինարարության բաժինները և կոլխոզների վարչությունները, անասնապահական նոր օբեկտների կառուցման հետ միա-



սին, պետք է գործնական միջոցների դիմեն առաջիկա մի քանի օրում լրիվին ավարտելու նաև գոյություն ունեցող անասնապահական շենքերի վերանորոգումը։

Բացառիկ լուրջ ուշադրություն պետք է դարձնել անասնապահության մասսայական որակավորում ունեցող կադրերի պատրաստման, ֆերմաներում աշխատող կոլխոզնիկների աշխատանքի ճիշտ կազմակերպման, աշխատանքի վարձատրության կարգավորման, անասնապահական ֆերմաների զոոտեխնիկական և անասնաբուժական սպասարկման գործի բարելավման հարցերի վրա։ Անհրաժեշտ է սիստեմատիկորեն ամրապնդել անասնապահական ֆերմաների կադրերը, որպես ֆերմաների վարիչներ և բրիգադիրներ առաջ քաշելով աշխատանքում ստուգված լավագույն կոլխոզնիկներին ու կոլխոզնիկուհիներին։

Հանրային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանի հաջող կատարումը և անասունների ձմեռումը հաջող անց-

կացնելը ռեսպուբլիկայի բոլոր անասնա-
պահների մարտական խնդիրն է։

Հայկական ՍՍՌ կոլխոզներն ունեն բոլոր հնարավորությունները Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի որոշումը պատվով կատարելու համար։

Անասնաբուծության զարգացման պետական պլանի կատարումն ապահովելու գործում մեծ անելիքներ ունեն գյուղական ագիտատորները։ Նրանք պետք է Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի որոշումը հասցնեն յուրաքանչյուր կոլխոզնիկի ու կոլխոզնիկուհու, սովխոզի յուրաքանչյուր բանվորի և նրանց մոբիլիզացնեն պարտիայի ու կառավարության որոշումը լիովին կենսագործելու, անասնաբուծության զարգացման պետական պլանները անթերի կատարելու համար։

—○—

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐԸ

Հրապարակված է ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1949 թվի երրորդ եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին։ Այդ արդյունքները պարզ և համոզեցուցիչ կերպով ցույց են տալիս, թե ինչպես մեր երկրի ժողովրդական տնտեսությունը հաստատուն կերպով առաջ է ընթանում վերելքի ճանապարհով։ Այդ արդյունքները վառ կերպով ցույց են տալիս, թե ինչպես Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար համաժողովրդական սոցիալիստական մրցության ծավալման հիման վրա Սովետական Միության աշխատավորները նորանոր հաջողություններ են ձեռք

բերել մեր հայրենիքի տնտեսական հզորության ամրապնդման, սովետական ժողովրրդի բարեկեցության հետագա բարձրացման գործում։

Այս տարվա 3-րդ եռամսյակում, ինչպես նաև առաջին կիսամյակում, կառավարությունը միջոցառումներ կիրառեց արտադրության կազմակերպումը ավելի ևս բարելավելու և առաջին հերթին արտադրական կարողությունները լրիվ օգտագործելու, ինչպես նաև հումքը, վառելանյութը և նյութերը տնտեսելու ուղղությամբ։ Դրա շնորհիվ արդյունաբերական արտադրության սկզբնապես սահմանված պլանը կառավարությունն ավելացրեց։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի գծով 1949 թվի 3-րդ եռամսյակի ավելացրած պլանը կատարվել է 102 տոկոսով։ 1949 թվի ինն ամսվա ընթացքում ամբողջությամբ վերցրած արդյունաբերական արտադրության ավելացված պլանը նույնպես գերակատարվել է։

ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1949 թվի երրորդ եռամսյակում, 1948 թվի 3-րդ եռամսյակի համեմատությամբ, աճեց 17 տոկոսով։ Իսկ եթե վերցնենք 1949 թվի ինն ամիսների



արդյունքները և համեմատենք 1948 թվի նույն ժամանակաշրջանի հետ, ապա աճը ավելի նշանակալի կլինի՝ այն է 20 տոկոս։

1949 թվի 3-րդ եռամսյակում պլանից դուրս թողարկվել է զգալի քանակությամբ արդյունաբերական արտադրանք՝ սև և գունավոր մետաղներ, սպիտակ թիթեղ, երկաթյա խողովակներ, ածուխ, նավթ, բենզին, կերոսին, էլեկտրաէներգիա, էլեկտրամոտոռներ, տրանսֆորմատորներ, էլեկտրալամպեր, կաբելային իրեր, բեռնատար ավտոմեքենաներ, ավտոբուսներ, գնդակավոր առանցքակալներ, տրակտորներ, հանքային պարարտանյութեր, ներկեր և քիմիական այլ նյութեր, կաուչուկ, ավտոդողեր, ցեմենտ, լուսամուտի ապակի, պատեֆոններ, կարի մեքենաներ, բամբակյա, բրդյա, վուշե և մետաքսե գործվածքներ, գուլպաներ, ռետինե կոշկեղեն, միս, երշիկեղեն, բուսական յուղ, շաքար, հրուշակեղեն, թեյ, գլանակ, շամպայն և արդյունաբերական արտադրանքի շատ այլ տեսակներ։

1949 թ. երրորդ եռամսյակում արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրությունը, 1948 թ. երրորդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է հետևյալ կերպ (տոկոսներով). չուգուն 119

տոկոսով, պողպատ 124, գլանվածք 127, եր-
կաթուղային ռելսեր 192, պղինձ 125, ածուխ
126, նավթ 116, էլեկտրաէներգիա 113,
մագիստրալային շոգեքարշեր 114, էլեկ-
տրաքարշեր 271, մագիստրալային ապրան-
քատար վագոններ 148, տրոլեյբուսներ 113,
բեռնատար ավտոմեքենաներ 128, մարդա-
տար ավտոմեքենաներ 223, ավտոբուսներ
131, էքսկավատորներ 129, շոգետուրբիններ
147, ավտոբեռնիչներ 8 անգամ, մանածա-
գործական մեքենաներ 147, գործվածքային
դազգահներ 165, տրակտորներ 154, հացա-
հատիկային կոմբայներ 165, տրակտորային
գութաններ 147, տրակտորային շարքացան-
ներ 153, բարդ կալսիչներ 135, հանքային
պարարտանյութեր 133, ավտոդողեր 148,
թուղթ 122, ստանդարտ տներ 152, հեծանիվ-
ներ 150, ռադիոընդունիչներ 162, պատեֆոն-
ներ 166, կարի մեքենաներ 123, ժամացույց-
ներ 185, բամբակեղեն գործվածքներ 112,
վուշեղեն գործվածքներ 122, բրդեղեն գործ-
վածքներ 115, մետաքսեղեն գործվածքներ
128, կաշե կոշկեղեն 115, ռետինե կոշկեղեն
127, գուլպաներ 128, միս 102, երշիկեղեն 142,
ձուկ 131, կենդանական յուղ 102, բուսական
յուղ 136, շաքար 194, հրուշակեղեն 122, պա-
հածոներ 126, օճառ 163, գլանակներ 113,



խաղողի գինի 128 տոկոսով, շամպայն 4,8 անգամ, գարեջուր 124 տոկոսով և այլն։

Արդյունաբերության այս հուժկու վերելքը հետևանք է ժողովրդական տնտեսության մեջ նոր, առաջավոր տեխնիկայի, հատկապես ավտոմատիկայի ներդրման, աշխատատար ու ծանր աշխատանքների մեքենայացման։ 1949 թվի երրորդ եռամսյակում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում զգալի աշխատանք է կատարված առաջավոր տեխնիկա արմատավորելու և աշխատատար ու ծանր աշխատանքների մեքենայացման մակարդակը ավելի ևս բարձրացնելու և արտադրական պրոցեսները ավտոմատացնելու ուղղությամբ։ Բարելավվել է սարքավորումների օգտագործումը արդյունաբերության մեջ։

1949 թվի ինն ամսվա ընթացքում արդյունաբերության շատ ճյուղերում արտադրանքի մեկ միավորին ընկնող հումքի, նյութերի, վառելանյութի և էլեկտրաէներգիայի ծախսը պլանային նորմաների համեմատությամբ իջեցվել է, և ի հաշիվ ստացված խնայողության արդյունաբերությունը տվել է զգալի քանակությամբ լրացուցիչ արտադրանք։

1949 թվի երրորդ եռամսյակում շարունակվում է արդյունաբերական արտադրանքի

այդ թվում լայն սպառման ապրանքների ո-
րակի և ասորտիմենտի հետագա բարելավու-
մը։ 1949 թվի համար սահմանված արդյու-
նաբերական արտադրանքի ինքնարժեքի ի-
ջեցման պլանը հաջողությամբ կատարվում է։

***

Կենտրոնական վիճակագրական վարչու-
թյան հաղորդագրությունը խոսում է նաև մեր
գյուղատնտեսության նոր, հուժկու վերելքի
մասին։ Այս տարի հացահատիկային կուլ-
տուրաների համախառն բերքը ավելի է, քան
1948 թվին և գերազանցում է 1940 թվի բեր-
քին։ Անցած տարվանից ավելի բարձր է և նա-
խապատերազմյան մակարդակը գերազան-
ցում է բամբակի, վուշի, կանեփի և արևա-
ծաղկի բերքը։ Անցած տարվանից զգալի շա-
փով ավելի է նաև շաքարի ճակնդեղի բերքը։
Ավելի հաջող, քան անցյալ տարի, անց է
կացվել բերքահավաքը։ Կոլխոզները, սով-
խոզները և գյուղացիական անհատական
տնտեսությունները մինչև հոկտեմբերի 5-ը
հավաքել են 6 միլիոն հեկտար ավելի բերք,
քան 1948 թվի նույն ժամանակամիջոցում։
Այս տարի աշնանացան կուլտուրաների ցան-
քը կատարվել է ավելի լավ ժամկետներում,
ագրոտեխնիկայի ավելի բարձր մակարդակի
պայմաններում։



Զգալիորեն բարձրացել է գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մակարդակը կոլխոզներում։ 1949 թվի անցած ժամանակաշրջանում մեքենա-տրակտորային կայանները կոլխոզներում կատարել են 21 տոկոսով ավելի գյուղատնտեսական աշխատանքներ, քան 1948 թվի նույն ժամանակամիջոցում։

Կատարելով պարտիայի և կառավարության առաջադրանքը հանրային-կոլխոզային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանի գծով, կոլխոզները մեծ աշխատանք են կատարում անասնապահական նոր ֆերմաներ կազմակերպելու և գոյություն ունեցող անասնապահական ֆերմաների անասունների գլխաքանակը կոմպլեկտավորելու ուղղությամբ։ Մինչև 1949 թվի հոկտեմբերի մեկը կոլխոզները կազմակերպել են ավելի քան 75 հազար նոր անասնապահական ֆերմա։ Կոլխոզներում հանրային անասունների գլխաքանակը 1948 թվի հոկտեմբերի 1-ից մինչև 1949 թվի հոկտեմբերի 1-ը ավելացել է՝ խոշոր եղջերավոր անասուններինը 20 տոկոսով, խոզերի գլխաքանակը՝ 76 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 13 տոկո-

սով։ Կոլխոզներում թռչունների գլխաքանա-
կը ավելացել է 62 տոկոսով։
Հաջողությամբ կենսագործվում է բնու-
թյան վերափոխման ստալինյան վիթխարի
պլանը։ 1949 թվի դաշտապաշտպան անտա-
ռատնկումների տարեկան պլանը արդեն կա-
տարվել է 102 տոկոսով, ընդ որում անտառա-
տնկումներ են կատարվել ավելի քան 280 հա-
զար հեկտար տարածության վրա և 540 հա-
զար հեկտար նախապատրաստվել է ապագա
անտառատնկումների համար։

Այս տարվա երրորդ եռամսյակում օրական
միջին բեռնման պլանը գերակատարել է եր-
կաթուղային տրանսպորտը։ Երկաթուղի-
ների բոլոր բեռների օրական միջին բեռնու-
մը 1949 թվի երրորդ եռամսյակի համեմա-
տությամբ, աճել է 17 տոկոսով։

Գնալով ավելի մեծ ծավալ է ընդունում կա-
պիտալ շինարարությունը։ 1949 թվի ինն ամ-
սվա ընթացքում բոլոր կապիտալ աշխա-
տանքների ծավալը 1948 թվի ինն ամսվա հա-
մեմատությամբ կազմեց 122 տոկոս։

Օր օրի վրա բարձրանում է սովետական
մարդկանց նյութական բարեկեցությունը։



Պետական և կոոպերատիվ մանրածախ ապ-
րանքաշրջանառությունը 1949 թվի երրորդ
եռամսյակում, 1948 թվի երրորդ եռամսյակի
համեմատությամբ ավելացավ (համադրելի
գներով) 18 տոկոսով։ Անցյալ տարվա ինն
ամիսների համեմատությամբ այս տարվա
անցած ինը ամիսների ընթացքում 15 տոկո-
սով ավելացավ պարենային ապրանքների
վաճառքը և 23 տոկոսով աճեց ոչ պարենային
ապրանքների վաճառքը։ Ընդ որում երշիկեղե-
նի վաճառքը աճեց 60 տոկոսով, ձկնեղենինը՝
18 տոկոսով, հրուշակեղենինը՝ 40 տոկոսով,
շաքարինը՝ 14 տոկոսով, բրդեղեն գործվածք-
ներինը՝ 71 տոկոսով, մետաքսեղեն գործ-
վածքներինը՝ 55 տոկոսով, կաշե կոշկեղենի-
նը՝ 31 տոկոսով, լվացքի և ձեռքի օճառի-
նը՝ 50 տոկոսով։ Ռադիոընդունիչների վա-
ճառքը ավելացել է 70 տոկոսով, հեծանիվնե-
րինը՝ 70 տոկոսով, ժամացույցներինը՝ 2 ան-
գամ, պատեֆոններինը՝ 57 տոկոսով։

Այն ժամանակ, երբ կապիտալիստական
երկրներում վրա հասնող տնտեսական ճգնա-
ժամի հետևանքով իրար հետևից փակվում են
արդյունաբերական ձեռնարկությունները և
միլիոնավոր մարդիկ փողոց են նետվում, սո-

վետական սոցիալիստական տնտեսությունը աճում և ընդարձակվում է անարգել կերպով, ավելանում է բանվորների և ծառայողների թիվը, բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը: ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ բանվորների և ծառայողների թիվը 1949 թվի երրորդ եռամսյակում 1948 թվի երրորդ եռամսյակի համեմատությամբ աճել է 2 միլիոնով:

1949 թվին բարձրագույն ուսումնական հաստատությունները, տեխնիկումները, ներառյալ նաև հեռակա դպրոցները, ավարտել են 450 հազար երիտասարդ մասնագետ:

Այս տարի կառուցվել և ընդլայնվել են 22 հազար մահճակալ ունեցող հիվանդանոցներ:

Բնակարանային շինարարության գծով 1949 թվի ինն ամսում կապիտալ աշխատանքների ծավալը 1948 թվի իննը ամսվա համեմատությամբ կազմեց 129 տոկոս:

***

Հրապարակված է. նաև Հայկական ՍՍՌ վիճակագրական վարչության հաղորդագրությունը Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1949 թվի երրորդ եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին:



Ռեսպուբլիկայի արդյունաբերության 1949 թվի երրորդ եռամսյակի համախառն արտադրանքի արտադրության պլանը կատարվել է 104 տոկոսով: 1949 թվի երրորդ եռամսյակի արտադրանքը անցած տարվա նույն եռամսյակի հետ համեմատած, աճել է 26 տոկոսով: Արտադրանքի ավելացման հետ միասին բարելավվել է նրա որակը, իջել է ինքնարժեքը:

Այս տարվա երրորդ եռամսյակում աչքի ընկնող հաջողություններ են ձեռք բերել նաև մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղի աշխատավորները: Մինչև հոկտեմբերի 10-ը ավարտված է հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը: Ծխախոտի տերևաքաղի պլանը կատարվել է 102 տոկոսով՝ 1948 թվի նույն ժամանակամիջոցի 78 տոկոսի դիմաց: Կոլխոզները հոկտեմբերի 21-ին պետությանը բամբակի հումք հանձնելու 1949 թվի պլանը ժամկետից շուտ կատարեցին 100,8 տոկոսով: Հաջող է անցնում նաև շաքարի ճակնդեղի բերքահավաքը: Ռեսպուբլիկայի անասնաբուծությունը կերով

ապահովելու նպատակով բարձր մակարդակով են անցկացվում և շուտով կավարտվեն խոտհունձը, սիլոսացումը և բազմամյա խոտերի սերմնաբուծարանների բերքահավաքը։

1949 թվի երրորդ եռամսյակում կապիտալ աշխատանքների ծավալը Հայկական ՍՍՌ ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ. 1948 թվի երրորդ եռամսյակի համեմատությամբ, կազմել է 145 տոկոս։

Այս երկու հաղորդագրություններն էլ մեկ անգամ ևս փայլուն կերպով խոսում են այն մասին, թե ինչպես մեր սոցիալիստական ժողովրդական տնտեսությունը, Լենին-Ստալինի պարտիայի գլխավորությամբ, համարձակորեն և արագ թափով առաջ է ընթանում վերելքի ճանապարհով։





# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ ՕԳՆՈՒՄ ԵՆ ՇՐՋԱՆԱՌՈՒ ՄԻՋՈՑՆԵՐԻ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅԱՆ ԱՐԱԳԱՑՄԱՆԸ

Շրջանառու միջոցների շրջանառությունն արագացնելու վերաբերյալ մոսկվացիների հայրենասիրական նախաձեռնությունը մեծ արձագանք գտավ մեր երկրի արդյունաբերական ձեռնարկություններում։ Արձագանքելով այդ նախաձեռնությանը, հազարավոր գործարանների ու ֆաբրիկաների կոլեկտիվներ պարտավորություններ ստանձնեցին հարազատ երկրի տնտեսական հզորությունն է՛լ ավելի բարձրացնելու համար արագացնել շրջանառու միջոցների շրջանառությունը։

Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը, հաշվի առնելով եղած հնարավորությունները, նույնպես պարտավորություն վերցրեց արագացնել շրջանառու միջոցների շրջանառությունը և այդպիսով այս տարի շրջանառությունից ազատել 4,5 միլիոն ռուբլի։ Կոլեկտիվի այդ նախաձեռնությունը գլխավորելու, վերցրած պարտավորությունը պատվով կատարելու համար գործարանի պարտիական

կազմակերպությունը ձեռք առավ բոլոր միջոցները, որպեսզի շրջանառության միջոցների շրջանառությունն արագացնելու համար մղվող պայքարի մեջ ներգրավվեն բոլոր բանվորներն ու բանվորուհիները, ինժեներներն ու տեխնիկները, վարպետներն ու ծառայողները։ Դրա համար գործարանի ագիտատորների առաջ խնդիր դրվեց՝ լայնորեն ծավալել տեխնիկական գիտելիքների պրոպագանդան, ամենաբարդ տնտեսական հարցերը մատչելիորեն բացատրելով, դրանք հասցնել բոլոր աշխատավորների գիտակցությանը, աշխատանքային յուրաքանչյուր տեղամասում օգնել բանվորներին՝ շրջանառու միջոցների շրջանառությունն արագացնելու գործում։ Եվ ահա գործարանի ձեռք բերած այսօրվա հաջողությունները խոսում են այն մասին, որ մեր ագիտատորները պատվով են կատարում իրենց առաջ դրված խնդիրները։

Բերենք մի քանի օրինակներ։

Գործարանի մատակարարման և վաճառահանման բաժնի ագիտատորներ՝ Գ. Զաքարբեկյանը, Մ. Մարտիրոսյանը, Մ. Մովսիսյանը և մյուսները իրենց զրույցների ընթացքում վերլուծելով այն երեք հաջորդական էտապները, որոնցից կախված է շրջանառու միջոցների շրջանառության արագությունը, բաժնի



աշխատողների ուշադրությունը կենտրոնացրին հումքի, նյութերի, վառելանյութի պաշարների սահմանված նորմատիվները պաշտպանելու հարցի վրա։ Այդ զրույցներով նրանք օգնեցին ցեխի կոլեկտիվին օրինակելի կարգ ու կանոն ստեղծելու գործարանի նյութա-տեխնիկական մատակարարման գործում, կարգավորելու պահեստային տընտեսությունը և այդպիսով ազատելու շրջանառու միջոցների այն մասը, որը «մեռցվում» է նյութական արժեքների գերպլանային պաշարներ կուտակելու հետևանքով։

Մատակարարման և վաճառահանման բաժինը հայտաբերեց, որ դեռ տարվա սկզբից գործարանի պահեստներում պահվել են ավելի շատ օժանդակ նյութեր, մոտ 3 միլիոն 700 հազար ռուբլու արժողությամբ, քան նախատեսված է նորմատիվներով։ Կոնկրետ կերպով ստուգելով ամեն մի նյութի գծով եղած ավելցուկները, գործարանը հրաժարվեց այդ նյութերի հետագա ստացումից, և մինչև կիսամյակի վերջը օժանդակ նյութերի ռեզերվները հասցրեց մեկ միլիոն 440 հազար ռուբլու, այսինքն ավելցուկները պակասեցրեց 2 միլիոն 260 հազար ռուբլու գումարով։

Շրջանառու միջոցների յուրաքանչյուր

ուբլում ընկնող արտադրանքն ավելացնելու համար անհրաժեշտ է բոլոր միջոցները օգտագործել հումքի, վառելանյութի, էլեկտրաէներգիայի և այլ նյութերի տնտեսման համար։

Հումքը խնայողորեն և տնտեսաբար ծախսելու լավագույն օրինակ է տալիս № 1—9 ցեխը։ Այդ ցեխի ագիտատորներ Գ. Շահնազարյանը, Ս. Մելիքսեթյանը, Մ. Շալչյանը, զրույցներ են կազմակերպել «Տնտեսումը դեպի աշխատանքն ունեցած սոցիալիստական վերաբերմունքի կարևորագույն գիծն է», «Կորուստների վերացման ուղիները», «Ագրեգատների հերմետիկ լինելը տնտեսման գրավականն է» և այլ թեմաների շուրջը։ Իրենց զրույցների ընթացքում ագիտատորները մասսայականացնում են ցեխի այն լավագույն աշխատողների փորձը, որոնք օրական 800—1200 կիլոգրամ հիմնական հումք են տնտեսում։ № 1—9 ցեխը տարվա սկզբից տնտեսել է մոտ 600 տոննա հիմնական հումք։ Իսկ գործարանն ամբողջությամբ վերցրած՝ 1120 տոննա հումք։ № 1—3. 1—8ա, և 1—8բ ցեխերի ագիտատորներ Ի. Անդրեևան, Գ. Աբրամչուկը, Ց. Հակոբյանը, Վ. Մարտիրոսյանը, Ն. Թերլեմեզյանը, Վ. Չերնովը և ուրիշներ իրենց ագիտացիոն աշխատանքի



ընթացքում միշտ ընդգծում են այն հանգամանքը, որ շրջանառու միջոցների շրջանառության արագացումը սերտորեն կապված է արտադրության կազմակերպումը բարելավելու, տեխնոլոգիական պրոցեսները կատարելագործելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, ագրեգատների աշխատանքը բարելավելու հետ, որը զգալի չափով կրճատում է արտադրության ցիկլը և պակասեցնում թերավարտ արտադրությունը։ № 1—11 ցեխի ագիտատորներ Վ. Պողոսյանը, Ն. Ներսիսյանը, Գ. Թելումյանը և մյուսները իրենց ագիտացիոն աշխատանքի ընթացքում բազմիցս կոնկրետ փաստերով ու թվական տվյալներով ցույց են տվել, որ շրջանառու միջոցների շրջանառության արագացման համար կարևոր նշանակություն ունի թողարկվող արտադրանքի որակի բարելավումը։ Այդ ցեխի բոլոր բրիգադները, արձագանքելով Կրասնոխոլմի կոմբինատի վարպետի օգնական Ալեքսանդր Զուտկինի նախաձեռնությանը, մտել են գերազանց որակի համար պայքարող բրիգադների մրցության մեջ։ Այդ բրիգադները, որ տարվա սկզբից առաջին տեսակի արտադրանքի թողարկումը հասցրին 96,6 տոկոսի, վերջին

Ները ամսում սկսել են թողարկել բացառա-
պես առաջին տեսակի արտադրանք։

Ս. Մ. Կիրովի անվան գործարանում զգա-
լի չափով ավելացվել է շրջանառու միջոցների
յուրաքանչյուր ռուբլուն ընկնող արտադրան-
քի քանակը։ Այսօր, Հոկտեմբերյան Սոցիա-
լիստական Մեծ ռևոլյուցիայի 32-րդ տարե-
դարձի նախօրյակին գործարանի կոլեկտիվը
պատվով է կատարել իր վերցրած պարտա-
վորությունը։

Շրջանառու միջոցների շրջանառության ա-
րագացման այդ ցուցանիշի մեջ ակնառու
կերպով դրսևորվում է գործարանի արտա-
դրության կուլտուրայի աճը, տեխնիկայի ու
տեխնոլոգիայի մակարդակը, արտադրության
կազմակերպման ու կառավարման որակը,
պլանային և դրամական տնտեսական գոր-
ծունեության վիճակը։ Այդ հաջողությունները
հետևանք են նաև գործարանի կոլեկտիվում
ագիտատորների տարած ագիտացիոն-մասա-
սայական աշխատանքի։

Վ. ԽՈՒԲԼԱՐՅԱՆ

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պարտկազմակեր-
պիչ Կիրովի անվան գործարանում

—○—



# ՆՈՐ ԲԱՅԱԶԵՏ

120 տարի առաջ, 1829—30 թ.թ. ռուս-թյուրքական պատերազմից հետո, Արևմտյան Հայաստանի Բայազետի գավառից, Խնուսի ու Մանասկերտի շրջաններից ավելի քան չորս հազար հայ ընտանիք, թյուրքական հարստահարիչների հալածանքներից ու ֆիզիկական բնաջնջումից ազատվելու համար, թողեցին հայրենի երկիրը, կայքն ու կարողությունը և բռնեցին գաղթի ուղին։ Բազմաթիվ տանջանքներ ու զրկանքներ կրելով նրանք հասան Ռուսաստանի տիրապետության տակ գտնվող Հայաստանի տերիտորիան և բնակություն հաստատեցին բարձր լեռների գրկում ընկած Սևանա լճի շրջանում։ Նրանց զգալի մասը բնակություն հաստատեց Քավառ ավանում, որը և դարձավ նրանց մշտական բնակավայրը և կոչվեց Նոր Բայազետ։

Ճիշտ է, Նոր Բայազետի աշխատավորները ազատվեցին սուլթանական Թյուրքիայի դաժան ճնշումներից, բայց ընկան ցարական

միապետության շահագործման տակ։ Իր իսկական ազատությունը Նոր Բայազետի աշխատավորությունը, հայ ժողովրդի հետ միասին, ստացավ միայն Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի շնորհիվ, երբ եղբայրական ռուս մեծ ժողովուրդը, Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, իր փրկարար ձեռքը մեկնեց բազմաչարչար հայ ժողովրդին և նրան փրկեց ֆիզիկական բնաջնջումից։

Սովետական իշխանության տարիներին աճեց ու բարգավաճեց Նոր Բայազետը, որը այժմ համարվում է մեր ռեսպուբլիկայի առաջավոր շրջկենտրոններից մեկը։ Նոր Բայազետը այլևս այն հին հետամնաց Քավառը չէ, որի անունը քաղքենիները հեգնանքով էին արտասանում ու ծաղրում քավառեցու հետամնացությունը։

Այժմ Նոր Բայազետն ունի իր արդյունաբերական ձեռնարկությունները, դպրոցների կուլտուր-լուսավորական հիմնարկների, առողջապահական լայն ցանց։ Կառուցված են միջնակարգ դպրոցի, մանկավարժական ուսումնարանի, կինո թատրոնի, բաղնիքի, ակումբի և այլ շենքեր, էլեկտրակայան, բարեկարգվել և ասֆալտապատվում են փողոցները։ Վերջին տարիներին քաղաքում կառուց-



վեցին երեք ծաղկապատ պուրակներ և մեկ կենտրոնական այգի, ուր վեր է բարձրանում մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինի հոյակապ արձանը։ Անց է կացված նոր ջրմուղ, որի շինարարությունը շարունակվում է։ Խոշոր աշխատանք է ձեռնարկված քաղաքի ծաղկազարդման ուղղությամբ։ Քաղաքային այգում ամեն տարի աճեցվում են բազմերանգ ծաղիկների 300 հազար սածիլներ, որոնցով ծաղկապատվում են պուրակները, այգիները, հիմնարկությունների, ձեռնարկությունների բակերը։ Քավառաչայի հոսանքի ուղղությամբ տնկվել են 300 հազար ծառ և այդ աշխատանքը շարունակվում է։

Բերենք մի քանի տեղեկություններ, որոնք ցույց են տալիս, թե ինչպես է զարգացել Նոր Բայազետը։

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Նախառևոլյուցիոն շրջանում Նոր Բայազետում չի եղել արդյունաբերական որևէ ձեռնարկություն։ Այժմ քաղաքում կան մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ, որոնցից խոշորներն են՝ Տրիկոտաժ ֆաբրիկան, Ձկնաբուծարանը, Մեխանիկական գործարանը, կոշկակարների, գործագործների փայտամշակման, կարի ու ձևի բազմատեսակ ապրանքների արտադրության արտել-

ները, տեղական արդյունաբերության կոմ-
բինատը, Կոմբինդրի գործարանը և այլն։
Նոր Բայազետի գորգարտելը իր ար-
տադրած գեղեցիկ գորգերով հայտնի է մեր
ռեսպուբլիկայում։ Ձկնաբուծարանը տարե-
կան աճեցնում է 64 միլիոնից ավելի ձկնիկ-
ներ, որոնք բաց են թողնվում Սևանա լիճը։
Մեծ հեռանկարներ ունի նորակառույց մե-
խանիկական գործարանը, որն արտադրելու
է գյուղատնտեսական գործիքներ, մահճա-
կալներ, տնային կահկարասի։
Դեռ անցյալ տարվանից շահագործման
հանձնվեց 400 կիլովատ կարողություն ունե-
ցող նորակառույց էլեկտրակայանը, որի
էներգիայով աշխատում են տեղարդ. կոմբի-
նատը, տրիկոտաժ ֆաբրիկան, փայտա-
մշակման արտելը, ՄՏ կայանի արհեստա-
նոցները, տպարանը, աղացարանը և այլ ար-
դյունաբերական ձեռնարկություններ։

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Շրջկենտրոնում է գտնվում շրջանի ամե-
նախոշոր կոլխոզը, որն ունի 1820 հեկտար
հացահատիկային կուլտուրաների, ինչպես
նաև կարտոֆիլի, բանջարեղենի, ծխախոտի,
բազմամյա խոտաբույսերի, կտվահատի
ցանքատարածություններ, 1600 գլուխ խո-
շոր, 8500 գլուխ մանր եղջերավոր անասուն-



ներ, ձիաբուծական, խոզաբուծական, թռչ-
նաբուծական ֆերմաներ։
Կոլխոզը, որը կրում է համաքաղաքացի,
Նոր Բայազետում մայիսյան ապստամբու-
թյան ղեկավար Բադիկ Բադիկյանի անունը,
համարվում է շրջանի ամենաառաջավոր կոլ-
խոզներից մեկը։ Դեռ անցյալ տարի նրա
անվանի ծխախոտագործներ Հրաչիկ Զաքար-
յանը, Մկրտիչ Քոլոզյանը ծխախոտի բարձր
բերք աճեցնելու համար, արժանացան Սո-
ցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչ-
ման, իսկ հացահատիկի գծով բարձր բերք
ստացողներ Սիրուն Թոռչյանը, Հայկո Փոք-
րիկյանը, Սերգեյ Մհերյանը և շատ ուրիշներ
պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալ-
ներով։ Այս տարի կոլխոզի ծխախոտագործ-
ները, անցյալ տարվա համեմատությամբ,
բերքատվությունը յուրաքանչյուր հեկտարից
բարձրացրել են 10 ցենտներով, անասնա-
պահական ֆերմաներից 230 հազար լիտր
կաթ ավելի է ստացված, քան անցյալ տարի։
Կոլխոզում ստեղծվել է հացահատիկի, կար-
տոֆիլի, բանջարեղենի, կաթնամթերքի ա-
ռատություն, կոլխոզնիկներն ստանում են
մեծ եկամուտներ։
Այս տարվանից սկսած կոլխոզը ձեռնա-
մուխ է եղել միչուրինյան պտղաբուծության

կարգացմանը, որի համար ստեղծել է սովխո-
կան տնկարան, ուր աճեցվում են խնձորենու,
տանձենու, սալորի տնկիներ։ Տնկիներ են
աճեցվում նաև դաշտապաշտպան անտա-
ռաշերտերի համար։

## ԿՈՒԼՏՈՒՐԱ ԵՎ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ

Մեկ չորս դասյան դպրոց՝ 60 աշակեր-
տով— ահա Նոր Բայազետի ժողովրդական
կրթության պատկերը նախառևոլյուցիոն շըր-
ջանում։

Սովետական իշխանության տարիներին
հիմնական հեղաշրջում կատարվեց նաև ժո-
ղովրդական կրթության գործում և իսպառ
վերջ տրվեց համատարած անգրագիտությա-
նը։ Այժմ Նոր Բայազետում գործում են միջ-
նակարգ, յոթնամյա և տարրական դպրոց-
ներ՝ 1970 աշակերտով, երաժշտական դըպ-
րոց, մանկավարժական ուսումնարան,
զոովետ տեխնիկում, երեկոյան միջնակարգ
դպրոց։

Երաժշտական դպրոցի առկայությունը
Նոր Բայազետում կուլտուրական մեծ նվա-
ճում է։ Դպրոցն ունի դաշնամուրի, ջութակի
և թավ ջութակի դասարաններ, ուր դասավան-
դում են երաժշտական բարձրագույն կրթութ-
յուն ունեցող մասնագետներ։

Նոր Բայազետի պետական թատրոնը, որը



հիմնադրվել է 1936 թվին, քաղաքի աշխա-
տավորության կուլտուրական հանգստի սի-
րելի վայրն է։ Քաղաքում լույս է տեսնում
շրջանային «Բայազետի կոլխոզնիկ» թերթը,
գործում է ռադիո հանգույցը։

## ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

Նախասովետական շրջանի Նոր Բայազե-
տում եղել է միայն մեկ բժիշկ, որը սպա-
սարկել է ամբողջ գավառի ազգաբնակչու-
թյանը։

Սովետական իշխանության տարիներին
ստեղծվել են առողջապահական հիանալի
պայմաններ։ Քաղաքում այժմ գործում են
բուժարանը՝ ակնաբուժական, թերապեվ-
տիկ, քիթ-կոկորդային, ատամնաբուժական
կաբինետներով, հիվանդանոցն իր ծննդա-
տնով, կոնսուլտացիան, մանկամսուրը,
կաթնախոհանոցը, շտապ օգնության կայա-
նը, սանլուս տունը, դեղատունը և լաբորա-
տորիան։ Քաղաքում աշխատում են 18
բժիշկ և միջին բուժ պերսոնալի 28 աշխա-
տող։ Քաղաքի յուրաքանչյուր շնչի առողջա-
պահության վրա պետությունը տարեկան
ծախսում է մոտ 70 ռուբլի։

Վ. ՓԵՎԱՐԳՅԱՆ

# ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԿԱԶՄՎԵԼԸ

Համաշխարհային երկրորդ պատերազմում ֆաշիստական Գերմանիայի ջախջախումից հետո, 1945 թվի ամռանը երեք դաշնակից տերությունների՝ ՍՍՌՄ-ի ԱՄՆ-ի և Անգլիայի կողմից ընդունվեց Գերմանիայի տնտեսական, քաղաքական և ապառազմականացման ծրագիրը՝ Պոտսդամի համաձայնագիրը, որի նպատակն էր լիովին բացառել Գերմանիայի կողմից նոր ագրեսիայի հնարավորությունը, վերափոխել Գերմանիան և այն դարձնել միասնական, անկախ, խաղաղասեր, դեմոկրատական պետություն։

Հայրենական Մեծ պատերազմում Սովետական Միությունը, ոչնչացնելով և ջախջախելով ֆաշիստական տիրապետությունը, հիտլերյան բանակը ու պետական ապարատը, երբեք իր առջև նպատակ չէր դրել բնաջնջել գերմանական ժողովրդին, ոչնչացնել կամ անդամահատել գերմանական պետությունը։ Պատերազմի հենց առաջին օրերին ժողովուրդների Մեծ առաջնորդ ընկեր Ստալինը նշեց գերմանական հարցի արմատական լուծման ծրագիրը։ 1942 թ. փետրվարի 23-ի հրամանում ընկեր Ստալինը գրում էր. «Օտարերկրյա մամուլում երբեմն շաղակրատում են, թե Կարմիր Բանակը նպատակ է դրել բնաջնջել



գերմանական ժողովրդին և ոչնչացնել գերմանական պետությունը։ Դա, իհարկե, տխմար վայրահաչություն է և անմիտ զրպարտություն Կարմիր Բանակի հասցեին։ Կարմիր Բանակը չունի և չի կարող ունենալ այդպիսի տխմար նպատակներ... Բայց ծիծաղելի կլիներ Հիտլերի կլիկը նույնացնել գերմանական ժողովրդի հետ, գերմանական պետության հետ։ Պատմության փորձն ասում է, որ հիտլերները գալիս և գնում են, իսկ գերմանական ժողովուրդը, գերմանական պետությունը մնում է»։

Հիտլերյան Գերմանիայի դեմ ձեռք բերված հաղթանակի օրը, 1945 թվի մայիսի 9-ին, ժողովրդին ուղղված իր դիմումի մեջ ընկեր Ստալինը կրկին անգամ նշեց. «Սովետական Միությունը տոնում է հաղթանակը, թեև նա չի էլ պատրաստվում ոչ անդամահատել, ոչ ոչնչացնել Գերմանիան»։

Սովետական Միությունը՝ անշեղորեն կիրառելով Գերմանիայի նկատմամբ ստալինյան այդ քաղաքականությունը և Պոտսդամի որոշումները, «ազատագրեց գերմանական ժողովրդի դեմոկրատական հզոր ուժերը, նա գերմանական ժողովրդի առաջ բացեց նոր կյանքի ուղին, այդ ճանապարհի վրա պատմական բեկում կատարելու ուղին» («Պրավդա»)։ Պոտսդամի համաձայնագիրը ուժի մեջ մտնելուց հետո Գերմանիայի օկուպացման սովետական գոտում թույլ տրվեց հակաֆաշիստական, դեմոկրատական պարտիաների ու կազմակերպությունների ազատ գոր-

ծումնեությունը, լիկվիդացվեցին ֆաշիստական բոլոր օջախները: Իրագործվեց հողային ռեֆորմը, ամենակարճ ժամանակամիջոցում դեմոնտաժի ենթարկվեցին կամ ոչնչացվեցին ռազմական արդյունաբերական օբյեկտները և ձեռք առնվեցին մի շարք արմատական միջոցառումներ, որոնք նպաստեցին երկրի դեմոկրատացմանը, աշխատավորների դրության բարելավմանը: Պլանային կերպով վերականգնվում է Գերմանիայի սովետական գոտու քայքայված տնտեսությունը, որն իր ծավալով մոտենում է մինչպատերազմյան զարգացման մակարդակին:

Անցած ավելի քան չորս տարիների ընթացքում սովետական կառավարությունը հետևողական կերպով հանդես է եկել Գերմանիայի նկատմամբ Պոտսդամի որոշումների անշեղ կենսագործման պահանջով: Նա վճռականորեն հանդես է եկել Գերմանիայի անդամահատման անգլո-ամերիկյան բլոկի տերությունների նենգ քաղաքականության դեմ և պայքարել է Գերմանիայի քաղաքական և տնտեսական միասնության, դեմոկրատական, խաղաղասեր և միասնական պետության ստեղծման համար, ամենաարագ կերպով հաշտության պայմանագիր կնքելու և օկուպացիոն բոլոր զորքերը Գերմանիայից հեռացնելու համար:

Հետպատերազմյան հենց առաջին օրերից արևմտյան տերությունների ամբողջ քաղաքականությունը ուղղված է եղել Պոտսդամի որոշումների դեմ: Անգլո-ամերիկյան իմպերիալիստները իր-



րենց պառակտողական քաղաքականությամբ ծանր վնասներ են հասցրել գերմանական ժողովրդին, մասնատել ու անդամահատել Գերմանիան: 1946 թվի դեկտեմբերին ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարությունները համաձայնություն կնքեցին Բիզոնիայի ստեղծման մասին, միացվեցին Գերմանիայի օկուպացման անգլիական և ամերիկյան գոտիները: Դա հանդիսացավ Գերմանիայի մասնատման առաջին պրակտիկ քայլը: 1947 թվին նրանք միակողմանիորեն իրականացրին Ռուրի մարզի տնտեսական անջատումը Գերմանիայից և այն դրին իրենց հսկողության տակ: Ռուրը ածխի և մետալուրգիայի ամենախոշոր կենտրոնն է և եղել է իմպերիալիստական Գերմանիայի ռազմական մեքենայի ողնաշարը: Անգլո-ամերիկյան իմպերիալիստները ցանկանում են վերականգնել գերմանական ռազմական ագրեսիայի այդ բազան: Գերմանիայի էկոնոմիկան զրկվեց նաև Սաարի մարզից: 1948 թվին արևմտյան Գերմանիայում և Բեռլինի արևմտյան հատվածներում անցկացվեց դրամական սեպարատ ռեֆորմ, որը տնտեսական պատնեշ ստեղծեց արևելյան և արևմտյան Գերմանիայի միջև:

Վերջապես 1949 թվին անգլո-ամերիկյան բլոկի տերությունները արևմտյան Գերմանիայի Բոնն քաղաքում ստեղծեցին տիկնիկային «կառավարություն», այդպիսով ավարտելով իրենց պառակտողական քաղաքականությունը: Միաժամանակ արևմտա-գերմանական մարզերում գործողության մեջ դրվեց օկուպա-

ցիոն ստատուտը, որը կոչված է երկար ժամանակով ամրապնդելու օկուպացման ռեժիմը, գերմանական աշխատավոր բնակչության ուսերի վրա դնելու օկուպացիոն ծախսերի ծանր բեռը և արևմտյան Գերմանիան վերածելու ամերիկյան իմպերիալիզմի գաղութի։

Անգլո-ամերիկյան իմպերիալիստները, անցկացնելով Գերմանիայի մասնատման իրենց քաղաքականությունը, արևմտյան գոտիներում ղեկավար պոստերում վերականգնում են ռեակցիոն տարրերին՝ հիտլերականներին և Ռուրի արդյունաբերական մագնատներին, վերածնում են գերմանական ֆաշիզմը, գերմանական ագրեսիան։ Նրանք արևմտյան Գերմանիան դիտում են որպես իրենց ստրատեգիական պլացդարմը, իսկ գերմանական ժողովրդին որպես թնդանոթային միս՝ ուղղված Սովետական Միության և ժողովրդա-դեմոկրատական երկրների դեմ իրենց ագրեսիվ, ոճրագործ պլանների իրականացման գործում։

Արևմտյան Գերմանիայում օրեց-օր քայքայվում է տնտեսությունը, աճում գործազրկությունը, աշխատավորական մասսաներին վիճակված է աղքատացում, սովատանջություն։

Անգլո-ամերիկյան տերությունների կողմից Պոտսդամի համաձայնագիրը խախտվելու հետևանքով գերմանական ժողովուրդը նետվել է ազգային մեծ աղետի մեջ։ Հասկանալի է դառնում, թե ինչու Գերմանիայի դեմոկրատական ուժերը չէին կարող հաշտվել այդ դրության հետ, չէին կարող համաձայնվել իրենց հայ-



րենիքի անդամահատման, նրա արևմտյան մարզերի հարստահարման հետ, և պայքարի դուրս եկան ստեղծելու միասնական անկախ դեմոկրատական ռեսպուբլիկա և համագերմանական կառավարություն։ Գերմանիայի սոցիալիստական միասնական պարտիան կոչ արեց գերմանական ժողովրդին միավորվել դեմոկրատական ազգային ճակատում և պայքարի դուրս գալ հանուն Գերմանիայի միասնության։ Գերմանական պրոբլեմի դեմոկրատական և արդարացի լուծման համար գերմանական ժողովրդի բոլոր խավերը պահանջեցին 1949 թվի մայիսի 15—16-ի ընդհանուր ընտրությունների ժամանակ ընտրված Գերմանական ժողովրդական խորհրդի հրավիրումը՝ համագերմանական կառավարություն ստեղծելու համար։ Այդ պահանջով հանդես եկան Գերմանիայի սովետական օկուպացիոն գոտու լիբերալ-դեմոկրատական, ազգային-դեմոկրատական, դեմոկրատական-գյուղացիական պարտիաները, քրիստոնեական-դեմոկրատական միությունը, ազատ պրոֆմիությունների միավորումը, ազատ գերմանական երիտասարդության միությունը և այլ կազմակերպություններ։

Արտահայտելով գերմանական ժողովրդի ցանկությունները 1949 թվի հոկտեմբերի 7-ին Բեռլինում հրավիրվեց Գերմանական ժողովրդական խորհրդի 9-րդ նստաշրջանը։ Ժողովրդական խորհուրդը քննարկեց և ընդունեց դեմոկրատական Գերմանիայի ազգային ճակատի մանիֆեստը, որն ազդարարում էր գերմանական

դեմոկրատական ռեսպուբլիկայի կազմվելը։ Այդ պատմական ակտը արտահայտում էր գերմանական ժողովրդի ցանկությունները, այն է՝ վերականգնել Գերմանիայի քաղաքական ու տնտեսական միասնությունը, ստեղծել դեմոկրատական ռեսպուբլիկայի համագերմանական կառավարություն, ամենաարագ կերպով կնքել Գերմանիայի հետ հաշտության արդարացի պայմանագիր, հեռացնել բոլոր օկուպացիոն զորքերը Գերմանիայից՝ հաշտության պայմանագիրը ստորագրվելուց հետո ամենակարճ ժամկետում։ Ապա գերմանական ժողովրդական խորհուրդը իրեն հռչակում է ժամանակավոր ժողովրդական պալատ (պառլամենտ)։

Ժամանակավոր ժողովրդական պալատը ընդունեց օրենք Գերմանիայի դեմոկրատական ռեսպուբլիկայի կոնստիտուցիան ուժի մեջ մտցնելու մասին, կոնստիտուցիա, որ հաստատված է 1949 թվի մայիսի 30-ին ժողովրդական երրորդ կոնգրեսի կողմից։ Այնուհետև պալատը օրենք է ընդունում պարլամենտի երկրորդ՝ Երկրամասերի ժամանակավոր պալատ ստեղծելու մասին, որն ունենալու է 34 դեպուտատ՝ Գերմանիայի օկուպացման սովետական գոտու հինգ երկրամասերից՝ Սաքսոնիայից, Սաքսոնիա-Անհալտից, Թյուրինգիայից, Բրանդենբուրգից և Մեկլենբուրգից։ Ընդունված օրենքով կազմվում է Գերմանիայի դեմոկրատական ռեսպուբլիկայի ժամանակավոր կառավարություն և ռեսպուբլիկայի մայրաքաղաքն է հաստատվում Բեռլինը։



Ժամանակավոր ժողովրդական պալատում ներկայացված պարտիաները և դեմոկրատական կազմակերպությունները իրենց դեպուտատների միջոցով ջերմորեն պաշտպանեցին պալատի ամենաուժեղ՝ Գերմանիայի սոցիալիստական միասնական պարտիայի ֆրակցիայի առաջարկությունը՝ այդ ֆրակցիայի ներկայացուցիչ Օտտո Գրոտեվոլի թեկնածությունը Գերմանիայի դեմոկրատական ռեսպուբլիկայի պրեմիեր-մինիստրի պոստի համար. պալատը հանձնարարում է Օտտո Գրոտեվոլին կազմել ժամանակավոր կառավարություն։

Հոկտեմբերի 11-ին գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի ժամանակավոր ժողովրդական պալատի և Երկրամասերի ժամանակավոր պալատի համատեղ նիստում Գերմանիայի սոցիալիստական միասնական պարտիայի նախագահ Վիլհելմ Պիկը ընտրվեց ռեսպուբլիկայի պրեզիդենտ։ Հոկտեմբերի 12-ին ժամանակավոր ժողովրդական պալատը հաստատեց ռեսպուբլիկայի ժամանակավոր կառավարության կազմը՝ Օտտո Գրոտեվոլի գլխավորությամբ։ Կառավարության կազմում ընտրվեցին Գերմանիայի սոցիալիստական միասնական պարտիայից (ԳՍՄՊ) ութ ներկայացուցիչ, լիբերալ դեմոկրատական պարտիայից (ԼԴՊ)—3, քրիստոնեական-դեմոկրատական միությունից (ՔԴՄ)—4, դեմոկրատական գյուղացիական պարտիայից—1 և մեկ անպարտիական։

Գերմանիայում դեմոկրատական ռեսպուբլիկայի

կազմվելուց հետո Սովետական կառավարությունը գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի ժամանակավոր կառավարությանը հանձնեց կառավարման այն ֆունկցիաները, որոնք մինչ այդ պատկանում էին Գերմանիայի սովետական ռազմական ադմինիստրացիային: Այդ ադմինիստրացիայի փոխարեն ստեղծվում է սովետական Վերահսկիչ Հանձնաժողով, որի խնդիրը կլինի վերահսկել Պոտսդամի որոշումների կատարմանը:

Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի կազմվելը— դա գերմանական ժողովրդի ճնշող մեծամասնության պատասխանն է անգլո-ամերիկյան իմպերիալիստների պառակտողական նենգ քաղաքականությանը, խորտակիչ հարված պատերազմի հրձիգների լագերին, այն ուժեղացնում է աշխարհում խաղաղության ու դեմոկրատիայի դիրքերը: Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկան կազմվելու կապակցությամբ պրեզիդենտ Վիլհելմ Պիկին և պրեմիեր մինիստր Օտտո Գրոտևոլին ուղղված ընկեր Ստալինի պատմական ողջույնը, որը լայն արձագանք գտավ Գերմանիայում և ամբողջ աշխարհում, վեր հանեց Գերմանիայում տեղի ունեցած իրադարձությունների միջազգային նշանակությունը:

Ընկեր Ստալինը գերմանական միասնական դեմոկրատական խաղաղասեր ռեսպուբլիկայի կազմվելը բնութագրեց որպես շրջադարձային կետ Եվրոպայի պատմության մեջ, դա դեմոկրատական խաղաղասեր



Գերմանիայի ստեղծումն է խաղաղասեր Սովետական Միության կողքին, որը բացառում է Եվրոպայում նոր պատերազմների հնարավորությունը, և անհնարին է դարձնում անգլո-ամերիկյան իմպերիալիստների կողմից եվրոպական երկրների ստրկացումը:

«ՎԵՐՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՓՈՐՁԸ ՑՈՒՅՑ ՏՎԵՑ, ՈՐ ԱՅԴ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ ԱՌԱՎԵԼ ՄԵԾ ԶՈՀԵՐ ԵՆ ԿՐԵԼ ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ, ՈՐ ԱՅԴ ԵՐԿՈՒ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ ԱՌԱՎԵԼ ՄԵԾ ՊՈՏԵՆՑԻԱՆԵՐ ՈՒՆԵՆ ԵՎՐՈՊԱՅՈՒՄ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆ ՈՒՆԵՑՈՂ ՄԵԾ ԱԿՑԻԱՆԵՐ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ: ԵԹԵ ԱՅԴ ԵՐԿՈՒ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ ՎՃՌԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ՑՈՒՅԱԲԵՐԵՆ ՊԱՅՔԱՐԵԼՈՒ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ԻՐԵՆՑ ՈՒԺԵՐԻ ՆՈՒՅՆՊԻՍԻ ԼԱՐՄԱՄԲ, ԻՆՉՊԻՍԻ ԼԱՐՄԱՄԲ ՆՐԱՆՔ ՊԱՏԵՐԱԶՄ ՄՂԵՑԻՆ, ԱՊԱ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆԸ ԵՎՐՈՊԱՅՈՒՄ ԿԱՐԵԼԻ Է ՀԱՄԱՐԵԼ ԱՊԱՀՈՎՎԱԾ»: (Ի. Վ. Ստալինի ողջույնից):

Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի հռչակումով արմատական շրջադարձ կատարվեց գերմանական ժողովրդի կյանքում, նրա առաջ բացվեցին նոր, պայծառ հեռանկարներ, նոր կյանքի ուղիներ: Այդ նոր, փառապանծ ճանապարհին գերմանական ժողովուրդը, նրա դեմոկրատական ուժերը կգտնեն սովետական ժողովրդի և աշխարհի բոլոր ժողովուրդների համակրանքն ու աջակցությունը:



# Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ

## Վ. ԳՐԻՇԱՆԻՆ ԵՎ ՌՈԴԻՈՆՈՎ
«Ինչպես պատրաստվել զեկուցման»:
*Հայպետհրատ, 1949 թ.։*

*«Ագիտատորի գրադարանի» սերիայով լույս տեսած այս բրոշյուրում խոսվում է այն մասին, թե ինչպես պետք է նախապատրաստվի և անցկացվի զեկուցումը։*

*Զեկուցումը էապես տարբերվում է ագիտացիոն աշխատանքի մյուս ձևերից՝ զեկուցումը պետք է հաշվել ավելի երկար ժամանակի համար, քան զրույցը կամ ելույթը միտինգում։ Քաղաքական զեկուցումը պետք է լինի խորապես գաղափարական, նպատակասլաց, գործուն, մարտական, ճշմարտացի և պարզ։ Քաղաքական զեկուցումների հիմնական առանցքը պետք է լինի բոլշևիկյան պարտիայի ներքին և արտաքին քաղաքականության կարևորագույն հարցերի պարզաբանումը մասսաներին։*

*Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները ի-*



*րենց բանավոր ելույթներում տվել են պրոպագանդիստական և ագիտացիոն վարպետության հիանալի օրինակներ։ Այս բրոշյուրում ցույց է տրված, թե մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների հարուստ ագիտացիոն փորձից ինչպես պետք է օգտվեն պրոպագանդիստները և ագիտատորները իրենց ելույթների ժամանակ։*

*«Չնայած նրան, որ Լենինը ուներ պրոպագանդիստի լայն փորձ,— պատմում է Ն. Կ. Կրուպսկայան,— ...նա իր յուրաքանչյուր ելույթին, յուրաքանչյուր զեկուցմանը, յուրաքանչյուր դասախոսությանը պատրաստվում էր խնամքով, կազմում էր իր ելույթների պլանները»։*

*Այսպես պետք է վարվի նաև յուրաքանչյուր պրոպագանդիստ և ագիտատոր՝ նախապես և կրկին ստուգելով այն թեման, որ ինքը նախապատրաստել է զեկուցման համար։*

*Բրոշյուրում ցույց է տրված, թե ինչպես պետք է նախապատրաստվել զեկուցմանը։ Զեկուցողի նախապատրաստական աշխատանքը բաղկացած պետք է լինի երեք էտապներից՝ նյութի ընտրությունից, նրա ուսումնասիրումից և զեկուցման կառուցումից։*

*Զեկուցողը իր զեկուցման մեջ պետք է օգտագործի տեղական փաստերը և առանձին*

լավագույն բանվորների, կոլխոզնիկների, աշխատողների անունները, այդ օգնում է ագիտատորիայի ակտիվության բարձրացմանը։

Զեկուցումը սովորաբար բաղկացած պետք է լինի երեք մասից՝ նախաբան, հիմնական բովանդակություն և եզրակացություն։

Նախաբանի նպատակը պետք է լինի ընդհանուր պատկերացում տալ զեկուցման թեմայի մասին, ցույց տալ նրա նշանակությունը ներկա էտապում։

Հիմնական մասում պետք է ծավալվի զեկուցման բովանդակությունը, որտեղ պետք է տրվի դեպքերի վերլուծությունը, նրանց փոխադարձ կապը, արվի եզրակացություններ։

Եզրափակիչ մասում զեկուցողը սատմը պետք է ամփոփի, ընդհանրացնի և ունկնդիրների առաջ դնի կոնկրետ խնդիրներ։

Դասախոսության և զեկուցման համար կարևոր նշանակություն ունի առարկայական պիտույքների օգտագործումը. օրինակ, եթե զեկուցումը միջազգային դրության մասին է, ապա պետք է օգտագործվի աշխարհագրական քարտեզը. հնգամյա պլանի մասին զեկուցման մեջ՝ դիագրամաններ, ծրագրեր, սխեմատիկ քարտեզներ և այլն։

---

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

### ԼԵՆԻՆԸ ԵՎ ՍՏԱԼԻՆԸ ՈՐՊԵՍ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՈԳԵՇՆՉՈՂՆԵՐ ԵՎ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆԵՐ

1. Լենինը և Ստալինը որպես բոլշևիկների պարտիայի կազմակերպիչներ և առաջնորդներ։

2. Լենինը և Ստալինը որպես Հոկտեմբերյան զինված ապստամբության նախապատրաստության և անցկացման կազմակերպիչներ և ղեկավարներ։

3. Լենինը և Ստալինը Սովետական պետության ստեղծողներն են։

4. Ընկեր Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովրդի ձեռք բերած համաշխարհային-պատմական հաղթանակները Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձի նախօրյակին։

5. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի միջազգային նշանակությունը։

6. Լենինի դրոշով, Ստալինի ղեկավարությամբ հառա՛ջ դեպի կոմունիզմի հաղթանակը։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՀամԿ(բ)Պ Պատմության համառոտ դասընթաց. 7-րդ գլուխ, էջ 249-307։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ։ Ճառ, արտասանած Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թ. փետրվարի 9-ին։

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-ամյակը։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ։ Համառոտ կենսագրություն։ Գլուխ 5-րդ, էջ 63-73։

## II

## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՈՒՑԻԱՅԻ 32-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ՆՇԱՆԱՎՈՐԵՆՔ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՆՈՐ ՍԽՐԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ

*1. Հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարում սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունները։*

*2. Հնգամյակը չորս տարում կատարելը մեր արդյունաբերության բնագավառի բոլոր աշխատողների պատվի գործն է։*

*3. Գյուղական աշխատավորության հիմնական խնդիրն է՝ լրիվ չափով կատարել պետության հանդեպ ունեցած բոլոր պարտավորությունները և դնել եկող տարվա բարձր բերքի հիմքը։*



*4. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձը կուլտուրայի, գիտության և տեխնիկայի նոր վերելքով նշանավորելը մեր ինտելիգենցիայի հայրենասիրական պարտքն է։*

*5. Ինչպես է ընթանում մեր ձեռնարկություններում, կոլխոզում, սովխոզում, հիմնարկություններում նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ժողովուրդների բարեկամության սովետական իդեոլոգիայի մեծ ուժը։ *«Պրավդայի» 1949 թվի սեպտեմբերի 4-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի սեպտեմբերի 6-ի համարում։*

Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությունը։ *«Ս. Հ.»-ի 1949 թվի սեպտեմբերի 3-ի առաջնորդողը։*

Սոցիալիստական մրցության մեծ ուժը։ *«Ս. Հ.»-ի 1949 թվի հոկտեմբերի 8-ի առաջնորդողը։*

Գինը 50 կոպ.

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Ս. ՍՊԱՆԴԱՐՅԱՆ— Հոդվածներ: 224 էջ:

Է. ԿԱԶԱԿԵՎԻՉ— Աստղ: 183 էջ, գինը 4 ռ. 80 կ.:

Վ. ՕԽՈՏՆԻԿՈՎ— Քարացած ձայների աշխարհում: 44 էջ, գինը 1 ռ. 50 կ.:

Վ. ԳՐՈՍՄԱՆ— Ժողովուրդն անմահ է: 249 էջ, գինը 8 ռ.:

Լ. ԿԱՐԱԳՈԶՅԱՆ, Գ. ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ— Այս աստղերը մերն են: 78 էջ, գինը 3 ռ.:

Ա. ԾՈՎԻԿՅԱՆ— Անտառային տնկարաններ: 76 էջ, գինը 10 ռ.:

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ՎՖ 03869 Պատվեր № 814 Տիրաժ 8.300

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
1949 г.
№ 20